Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

ՀԿ(Բ)Պ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# Ագիտատորի ԲԼՈԿՆՈՏ



№ 17 ՕԳՈՍՏՈՍ 1947

«ՍՈՎԵՏԱԿԱՆ ՀԱՅԱՍՏԱՆ»-Ի ՀՐԱՏԱՐԱԿՉՈՒԹՅՈՒՆ

ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ

Նյութեր զրույցների համար



Դեպի Մեծ Հոկտեմբերի 30-ամյակը



Միջազգային թեմաների շուրջը



Խորհուրդներ ագիտատորին



Խմբագրության հասցեն.— Երևան, Նալբանդյան 32, ՀԿ(բ)Պ Կենտկոմի Պրոպագանդայի և Ագիտացիայի բաժին, հեռախոս՝ 33-86։





# ՄՈՍԿՎԱՅԻ 800-ԱՄՅԱԿԸ

*Մոսկվա՜։*

*Ինչպիսի՜ վեհություն, ինչքա՜ն հմայք կա այս բառի մեջ։*

*Ութհարյուր տարի անընդհատ սերունդները հոլովել են այս անունը։ Ժամանակը, որ ընդունակ է իր ամենակարող երախի մեջ ճզմելու ամեն ինչ, նույնիսկ փոշի էլ չի դրել այդ անվան վրա։*

*Անցած այդ ութ դարերի ընթացքում աշխարհի ամենազանազան մասերում անհետացել են երբեմնի հզորագույն տասնյակ քաղաքներ, իսկ Մոսկվան կա՛։*

*Նա կանգնած է խրոխտ ու անսասան՝ վտանգի պահին ահեղ, վտանգն անցնելուց հետո հեզանազ ու քնքշագին։*

*Մե՛կ անգամ չի նա կորել հրդեհի երկնահաս բոցերի մեջ։ Թշնամուն հաջողվել է երբեմն այրել, մոխիր դարձնել նրա գեղեցիկ տները, նրա հոյաշեն ապարանքները։ Բայց*

այրել նրա ոգին, ոչ մի թշնամու չի հաջողվել։ Ամեն անգամ աղետից հետո նա հեքիաթային թռչունի պես բարձրացել է մոխիրների միջից և կանգնել՝ առավել գեղեցիկ, առավել հմայիչ։

Սովետական ժողովուրդն այս տարի նշում է իր երկրի այդ գեղեցիկ մայրաքաղաքի 800-ամյակը։ Յուրաքանչյուր սովետական քաղաքացի օրինական հպարտությամբ է արտասանում Մոսկվա անունը և սիրագորով իր հայացքն ուղղում դեպի այդ գեղեցկուհին, հիշում նրա հերոսական անցյալը, տեսնում նրա բոցավառ ներկան։

***

Ե՞րբ և ինչպե՞ս է տեղի ունեցել Մոսկվայի ծնունդը։

Առաջին տարեգրային տեղեկությունը Մոսկվայի մասին վերաբերում է 1147 թվականին։ Այդ ժամանակ Մոսկվան իշխանապատկան մի գյուղ էր, կանգնած այնտեղ, ուր Նեգլինկան խառնվում է Մոսկվա գետին։ Այդ գյուղը պատկանում էր Սուզդալյան իշխան Յուրի Դոլգորուկիին։

Հաջորդ հարյուրամյակը քիչ փոփոխություն բերեց Մոսկվայի համար։ Նա դեռ



շարունակում էր մնալ մի աննշան կալվածք այս կամ այն իշխանի ձեռքին։

Սակայն ժամանակն աշխատում էր Մոսկվայի օգտին։ Նա արդեն մտել էր այն մեծ պայքարի հորձանուտը, որ մղում էին իրար դեմ Վլադիմիրյան Մեծ իշխանության մեջ մտնող իշխանները։ Այդ պայքարն ամեն անգամ վերջանում էր իշխաններից մեկի ուժեղացումով, մյուսի թուլացումով։ Սակայն այդ անվերջ պայքարի ու դրա շնորհիվ տեղի ունեցող փոփոխությունների մեջ պետք էր նկատել մի նշանակալից երևույթ —դա մեծ իշխանի շուրջը բոլոր ուժերի կենտրոնացման պրոցեսն էր, որը պայմանավորված էր ոչ միայն տեղի ունեցող տընտեսական տեղաշարժերով, այլև արտաքին վտանգի դեմ ռուս ժողովրդի կողմից մղվող պայքարով։ Շուտով Մոսկվան դառնում է այդ պայքարի դրոշակակիրը։

Մոսկովյան իշխանության հզորացման համար նոր պայմաններ են ստեղծվում 14-րդ դարի վերջերին։ Այդ ժամանակ նա ավելի ու ավելի է դառնում այն միակ ուժը, որն ընդունակ էր պաշտպանելու ռուսական հողը օտարազգի նվաճողների հարձակումներից։ 1380 թվականի սեպտեմբերի 8-ի նա-

կատամարտը, որ տեղի ունեցավ Նեպրյադվա գետի ափին, Կուլիկովյան դաշտում, թաթարա-մոնղոլական հորդաների դեմ, ցույց տվեց, որ թշնամուն հաղթելու միակ ելքը ամբողջ երկրի միավորման մեջ է։ Այդ ճակատամարտից մոտ մեկ հարյուրամյակ հետո ռուս ժողովուրդը վերջնականապես ազատագրվեց թաթարական լծից։

Ռուսական հողերի միավորումը Մոսկվայի շուրջը, որ սկսվեց 14-րդ դարում, ավարտվում է 15-րդ դարի վերջին և 16-րդ դարի սկզբներին։ Մոսկվան դառնում է ռուսական միասնական պետության մայրաքաղաք։ Նոր տեսք է ընդունում Կրեմլը։ Նրա պարիսպների հետևում բարձրանում են նորակառույց տաճարների գմբեթները։ Մեծ ու գեղեցիկ շենքեր են կառուցվում նաև Կրեմլի պարիսպներից դուրս։ Քաղաքն արագ թափով մեծանում է։

Սակայն ռուսական պետության հզորացումն ու աճը հանգիստ չէր տալիս նրա թշնամիներին։ Նրանք դավեր էին նյութում Մոսկվային տիրանալու համար, երազում էին մի մեծ ժողովուրդ զրկել իր անկախությունից։



Այս անգամ թշնամին սողում է արևմուտքից։ Լեհական Սիգիզմունդ թագավորը, դավաճան բոյարների հետ դաշնակցած, մտնում է Մոսկվա, գրավում Կրեմլը։

Կրկին ըմբոստանում է ռուս մարդու ոգին։ Նրա մեջ լեռնանում է ատելությունն անարգ թշնամու դեմ։ Նա վճռական պայքարի է ելնում։ Այս պայքարից ևս ռուս ժողովուրդը դուրս եկավ մեծ հաղթանակով։ Քաջարի զորագնդերը, մեծ հայրենասերներ Մինինի և Պոժարսկու առաջնորդությամբ, 1612 թվականի հոկտեմբերին հաղթականորեն մտնում են Կրեմլ։

Լեհական բարբարոսները, նախազգուշակելով իրենց մոտալուտ վախճանը, ոչ մի բանի առաջ կանգ չէին առնում։ Նրանք քանդեցին և հրի ճարակ դարձրին Մոսկվայի գեղեցիկ տաճարներն ու պալատները։

Սակայն նենգամիտ թշնամին այս անգամ էլ սխալվեց իր հաշիվների մեջ։ Մոսկվայի հրդեհումը չէր նշանակում Մոսկվայի ոչնչացում։ Կարճ ժամանակ անց, հրդեհված տաճարների ու պալատների փոխարեն բարձրանում են նորերը։ Ռուս ժողովրդի ստեղծագործ հանճարն առավել գեղեցիկ տեսք է տալիս իր ազգային կենտրոնին։

Մոսկվայի, որպես մեծ պետության մայրաքաղաքի նշանակությունն ավելի է մեծանում 17-րդ դարում, երբ ռուսական պետությունը ընդլայնում է իր տերիտորիան, տարածվելով Ուկրաինայից մինչև Ուրալ և Ուրալից մինչև Խաղաղ օվկիանոսի ափերը։

Մոսկվան չկորցրեց իր նշանակությունը, երբ 18-րդ դարի սկզբին մայրաքաղաքը տեղափոխվեց Պետերբուրգ։

Գտնվելով մեծ տերության կենտրոնում, նա դեպի իրեն էր ձգում երկրի բոլոր ծայրերը։ Այստեղ մի նոր ուժով ծաղկում է առևտուրն ու արդյունաբերությունը, ռուսական կուլտուրան։ Արդեն 17-րդ դարի վերջին Մոսկվայում հիմնադրվում է Ռուսաստանի առաջին բարձրագույն ուսումնական հաստատությունը, սկզբնավորվում է հրատարակչական գործը, աննախընթաց թափով զարգանում է ճարտարապետությունը։ Ռուսական գիտության նախահայր, մեծ գիտնական Լոմոնոսովի նախաձեռնությամբ 1755 թվականին Մոսկվայում հիմնվում է առաջին համալսարանը, որը գիտության և կուլտուրայի տարածման անփոխարինելի դարբնոց է դառնում ամբողջ երկրի համար։



***

... Երկնակամարի վրա նորից են կուտակվում ամպերը։ Մոսկվայի և ամբողջ Ռուսաստանի վրա կախվում է նոր պատերազմի սպառնալիքը։ Իր երկաթե կրնկի տակ տրորելով ամբողջ Եվրոպան, Նապոլեոնյան բազմալեզու բանակն անցնում է Նեմանը և մտնում ռուսական սրբազան հողը։ Ռուսական բանակները նահանջում են, արնաքամ անելով թշնամուն։ Ռուս մեծ զորավար Կուտուզովը որոշում է Ռուսաստանը փրկելու համար հանձնել Մոսկվան։

Ֆրանսիական գոռոզամիտ կայսր Նապոլեոնն այժմ արդեն չէր կասկածում իր լիակատար հաղթանակի նկատմամբ։ Կրեմլի պալատներում նստած, նա անհամբեր սպասում էր ռուսական պատվիրակությանը, որը, նրա կարծիքով պետք է գար, ծնկաչոք փռվեր իր ոտքերի տակ և հաշտություն խնդրեր։ Սակայն Նապոլեոնը չարաչար սխալվում էր։

Տիտանական ուժով և մոլեգնությամբ ալեկոծվեց ժողովրդական բարկության ահեղամռունչ ծովը։ Ռուսական բանակները, ուժեր հավաքելով, հանճարեղ զորավար Կուտուզովի մշակած պլանով անցան հարձակման։

Թշնամու երբեմնի անպարտելի թվացող բանակը բռնեց նահանջի, ավելի ճիշտ կլիներ ասել փախուստի ճանապարհը։ Նապոլեոնն ինքն էլ հազիվ փրկվեց փախուստի միջոցով։ Նրա վիթխարի բանակն իր նահանջի ճանապարհին կորցրեց ոչ միայն հաղթողի համբավը, այլ և ոչնչացվեց ֆիզիկապես։

1812 թվականի հայրենական պատերազմի ժամանակ Մոսկվան հանդես եկավ որպես ռուս ժողովրդին համախմբողն ու ոգեշնչողը Հայրենիքի անկախության համար մղվող պայքարում։ Ռուս ժողովուրդն այդ օրերին կրկին անգամ զգաց, թե որքան ամուր ու անխախտ են նրա կապերը հարազատ Մոսկվայի հետ։

Հրդեհված քաղաքն արագորեն վերակառուցվում է։ Մոսկվայի փողոցներում բարձրանում են ճարտարապետության վերջին խոսքով կառուցված նոր շենքեր, սակայն ամենից նշանակալիցն այդ շրջանում արվեստի և առանձնապես գրականության բուռն ծաղկումն էր։

Մոսկվայի համալսարանը դառնում է ժամանակի առաջավոր գաղափարների կենտրոնը։ Այդ համալսարանից է դուրս եկել իր կյանքն ու տաղանդը Հայրենիքի բարո-



րության նվիրաբերած երիտասարդությունը։ Գերցենը, Բելինսկին, Օգարյովը, Սոլովյովը, Գրանովսկին և շատ ուրիշներ իրենց բեղմնավոր կյանքն սկսել են այդ համալսարանում։

Մոսկվան անսահմանորեն սիրում էր Պուշկինը։ Այստեղ է նա գրել իր մի շարք գործերը։ Մոսկվան գրկաբաց ընդունում էր ռուս մեծ գրողներ Գրիբոեդովին և Լերմոնտովին, Օստրովսկուն և Գոգոլին, մեծ նկարիչ Սուրիկովին, տաղանդավոր կոմպոզիտոր Չայկովսկուն։ Մոսկվայում արագորեն զարգանում է թատերական և երաժշտական արվեստը։ Այստեղ դրսևորվեց ռուսական բեմի մեծ վարպետ Շչեպկինի և նշանավոր դաշնակահար Ռուբինշտեյնի տաղանդը։

19-րդ դարի երկրորդ կեսին, երբ արդեն չկար ճորտատիրական իրավունքը, Ռուսաստանում արագորեն զարգանում է արդյունաբերությունը, կառուցվում են երկաթուղիներ, որոնք երկրի ծայրամասերը միացնում են իրար հետ և խաչաձևվում Մոսկվայում։ Մոսկվայի համար մի նոր դարաշրջան է բացվում։ Այնտեղ կառուցվում են նորանոր գործարաններ։

Արդյունաբերության աճի հետ մեկտեղ,

բազմանում է պրոլետարիատի բանակը, կոփվում ու դաստիարակվում է բանվորական ռևոլյուցիոներների նոր սերունդը։

Հաճախ Մոսկվա է գալիս ապագա մարտերի հանճարեղ կազմակերպիչ Վլադիմիր Իլյիչ Լենինը։ Նրա անմիջական մասնակցությամբ Մոսկվայում 1894 թվականին կազմակերպվում է «Բանվորական միությունը», որը ղեկավարում է Մոսկվայի պրոլետարիատի ռևոլյուցիոն շարժումը, պրոկլամացիաներ է տպագրում, պրոպագանդա մղում և կապ հաստատում արտասահմանի հետ։

1905 թվականի ռևոլյուցիայի ժամանակ Մոսկվան գտնվում էր մարտի առաջին գծում։ Դեկտեմբերյան զինված ապստամբության մեջ Մոսկվայի պրոլետարիատը, բոլշևիկների փառապանծ պարտիայի ղեկավարությամբ, հերոսության անմոռանալի օրինակներ ցույց տվեց։ «Մոսկվայի բանվորների անմոռանալի հերոսությունը պայքարի օրինակ տվեց ամբողջ Ռուսաստանի աշխատավոր մասսաներին» (Լենին)։

***

1917 թվականի Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ Ռևոլյուցիայի ահեղ օրերին



Մոսկվայի պրոլետարիատը ամբողջ երկրի հետ միասին գրոհի ելավ տիրող կարգերի դեմ։ Ջախջախելով սպիտակգվարդիական բանդաներին, Մոսկվայի բանվորների զինված ջոկատները գրավեցին Կրեմլը։ Ռևոլյուցիան հաղթանակեց նաև Մոսկվայում։

1918 թվականի գարնանը ռևոլյուցիոն Պիտերից Մոսկվա եկավ Վլադիմիր Իլյիչ Լենինը, որին գրկաբաց ընդունեց Կարմիր Մոսկվան։ Այդ նույն թվականի մարտի 12-ից Մոսկվան դառնում է Սովետական մեծ երկրի մայրաքաղաքը։

Քաղաքացիական պատերազմի տարիներն են։ Սրիտասարդ սովետական երկիրը բոլոր կողմերից շրջապատել են թշնամիները։ Նրանք սողալով ավելի ու ավելի են մոտենում մեր Հայրենիքի մայրաքաղաքին։ Իսկ Կրեմլում գտնվում է ռևոլյուցիայի մեծ շտաբը։ Այստեղից Լենինն իր հանճարի ուժով ղեկավարում է սովետական ժողովրդի հերոսական պայքարն ընդդեմ թշնամու։ Այստեղից նա ռազմաճակատի ամենապատասխանատու հատվածներն է ուղարկում իր ամենահավատարիմ զինակից Ստալինին։

Լենինը և Ստալինը, բոլշևիկների պարտիան,

կազմակերպում են հաղթանակը բազմաթիվ և ուժեղ թշնամիների դեմ։ Երկիրն ազատ շունչ է քաշում։

Սկսվում է մի նոր շրջան—խաղաղ ստեղծագործական աշխատանքի ժամանակաշրջանը։

***

1924 թվականի հունվարին մեռավ Սովետական պետության հիմնադիր, ժողովուրդների հանճարեղ առաջնորդ Վլադիմիր Իլյիչ Լենինը։ Նրա թարմ աճյունի առաջ մեծ երդում տվեց Ստալինը։ Մոսկվայի Սյունազարդ դահլիճից ստալինյան երդման խոսքերը տարածվեցին ամբողջ երկրով մեկ։

Ամենուրեք՝ Բալթիկայից մինչև Խաղաղ օվկիանոսի ափերը, Հյուսիսային սառուցյալ օվկիանոսից մինչև մերձկասպյան կիզիչ ավազուտները, նոր ուժով եռաց ստեղծագործ աշխատանքը։ Ծխացին Ստալինյան հնգամյակների տարիներին կառուցված հարյուրավոր ու հազարավոր նոր գործարանների ծխնելույզները։ Կոլխոզային լայնարձակ դաշտերում նոր թափ ստացավ աշխատանքը։ Մոսկվան—ՍՍՌՄ բազմազգ ժողովրդի մեծ Հայրենիքի մայրաքաղաքը, այդ



մեծ պայքարի դրոշակակիրն է։ Այդ պայքարի ուղին լուսավորողը Կրեմլն է, նրա հավերժափայլ աստղերը։

***

Սովետական բազմազգ ժողովրդի մայրաքաղաքը երբեք այնքան հարազատ չէր թվացել բոլորի սրտին, որքան Հայրենական պատերազմի տարիներին։

Հիտլերյան շնագայլերի ոհմակը 1941 թվականի աշնանը սողալով մոտենում էր մեր մայրաքաղաքին։ Նրանք հավատացած էին, թե ահա ուր որ է կընկնի Մոսկվան։ Բայց Մոսկվան չընկավ։ Նա չնահանջեց թշնամու վայրագ հորդաների առաջ, որովհետև նրա պաշտպանությունը գտնվում էր ստալինյան ամուր ձեռքերում, որովհետև անհողդողդ էր սովետական ժողովրդի կամքը։ Ճիշտ այն պահին, երբ հիտլերյան ավազակներն ավելի ու ավելի էին մոտենում Մոսկվային, մեծ Ստալինը, Լենինի դամբարանի տրիբունից ընդունում էր մայրաքաղաքի ռազմիկների շքերթը։ Նա հանգիստ ու վստահ նայում էր դեպքերին և իր արծվային հայացքով տեսնում հեռուները։ Նա գիտեր, որ շուտով կծագի հաղթանակի արևը։

— Լենինի դրոշով, առա՜ջ դեպի հաղթանակ,— լսում էր ժողովուրդն իր առաջնորդին և անձնուրաց կռվի գնում հանուն իր մայրաքաղաքի, հանուն իր Հայրենիքի։

Կատաղի կռիվների մեջ անսասան և անընկճելի մնաց Մոսկվան։ Նրա պատերի տակ հօդս ցնդեց գերմանական բանակի անպարտելիության առասպելը։

Մոսկվան էր ղեկավարում սովետական ժողովրդի տիտանական պայքարը։ Մոսկվայում ծնունդ առան թշնամուն ջախջախելու ստալինյան հանճարեղ պլանները, որ ամենափայլուն ձևով կյանքի վերածեցին սովետական զինված ուժերը Ստալինգրադի տակ, Դնեպրի և Պրուտի, Վիսլայի և Օդերի վրա։

Վերջացավ մեծ պատերազմը։ Լռեցին վերջին համազարկերը։ Սովետական ժողովուրդը վերսկսեց իր խաղաղ շինարարական աշխատանքը։ Վերականգնվում ու բարձրանում է ամբողջ երկրի տնտեսությունը և ամբողջ երկրի հետ միասին օրավուր ծաղկում է մեր փառապանծ մայրաքաղաք Մոսկվան, ավելի ու ավելի է բարեկարգվում, ավելի ու ավելի գեղեցիկ է դառնում։



***

Ութհարյուր տարի է անցել Մոսկվայի հիմնադրման օրից։ Այդ տարիներից 30-ը սովետական տարիներ են։ Պատմականորեն կարճ այդ ժամանակամիջոցում վիթխարի տեղաշարժեր են կատարվել Մոսկվայում, փոխվել է նրա դեմքը, սովետական ժողովրդի շինարար ձեռքը ուղղել է նրա ոլորապտույտ փողոցները, վերածելով դրանք լայն պողոտաների։ Ոչ մի դարում այնքան շատ բնակելի շենքեր չեն կառուցվել Մոսկվայում, որքան այս երեսնամյակի ընթացքում։ Եվ այդ բազմահարկ տներում ապրում են ոչ թե կապիտալիստները, ոչ թե ազնվականները, այլ Մոսկվայի աշխատավորությունը։ Բերենք միայն մեկ համեմատություն—եթե ռևոլյուցիայից առաջ Սադովոյե շրջանային պողոտայում բնակվողների միայն 5 %-ն էր պատկանում բանվորական ընտանիքներին, ապա այժմ այդ տոկոսը հասել է 50-ի։

Ստալինյան առաջին երկու հնգամյակների ընթացքում Մոսկվայում կառուցվեցին բազմաթիվ գործարաններ, այդ թվում գնդակավոր առանցքակալների առաջին հսկայական գործարանը, որն աշխարհի ամենախոշոր արդյունաբերական ձեռնարկություններից

մեկն է։ Կարճ ժամանակամիջոցում կառուցվեց երկրի պարծանքներից մեկը՝ Ստալինի անվան ավտոմոբիլային գործարանը, բարձրորակ պողպատ արտադրող «Սերպ ի մոլոտ» գործարանը։ 1913 թվականի համեմատությամբ Մոսկվա քաղաքի մետաղամշակման գործարանների համախառն արտադրանքը 1940 թվականին աճեց 96 անգամ։ Միայն չթեղեն արտադրող Մոսկվան Ստալինյան հնգամյակների տարիներին դարձավ ծանր արդյունաբերության խոշոր կենտրոն։

Ավելի պայծառ հեռանկարներ են բացվում Մոսկվայի առջև նոր հնգամյակում։ Մոսկվայի արդյունաբերական ձեռնարկությունների համախառն արտադրանքը առաջիկա տարիներում ավելանալու է նախապատերազմյանի համեմատությամբ մոտ 30 անգամ։ Հնգամյակի վերջում ավտոմոբիլների արտադրությունը կկրկնապատկվի, մոտ մեկ և կես անգամ կավելանա դազգահների արտադրությունը, ավելի քան երեք անգամ՝ բամբակեղեն գործվածքների, երկու անգամ՝ բրդեղեն և 4, 5 անգամ մետաքսեղեն գործվածքների արտադրանքը։

Մեծ չափով կզարգանա տեղական, կոոպե



րատիվ և լայն սպառման առարկաների, շինանյութերի, էլեկտրոէներգիայի արդյունաբերությունը։

Աշխարհում ոչ մի քաղաք այնպես արագ չի աճել, ինչպես Մոսկվան այս վերջին երեսնամյակում։ 1911 թվականին Մոսկվայի տերիտորիան կազմում էր 17 հազար 700 հեկտար, 1932 թվականին այն գրեթե կրկնապատկվեց, հասնելով 33 հազար հեկտարի։ Բնակչությունը 1917 թվականի մեկ միլիոն 854 հազարից աճեց 1939 թվականին հասնելով չորս միլիոն 137 հազարի։

Դեռ 1931 թվականին ՀամԿ(բ)Պ Կենտկոմի պլենումը նշեց Մոսկվայի քաղաքային տնտեսության զարգացման բնագավառում ձեռք բերված հաջողությունները։ Միաժամանակ պլենումն ընդգծեց, որ քաղաքային տնտեսությունը ետ է մնում մայրաքաղաքի բնակչության աճից։

Ընկեր Ստալինի ցուցումով մշակվեց մայրաքաղաքի վերակառուցման գլխավոր պլանը, որը 1935 թվականի հուլիսի 10-ի հատուկ որոշմամբ հաստատվեց ՍՍՌՄ Ժողկոմսովետի և ՀամԿ(բ)Պ Կենտկոմի կողմից։

Այդ պլանի իրագործումը Մոսկվան կդարձ-

նի աշխարհի ամենագեղեցիկ ու ամենաբարեկարգ քաղաքը։

Պարտիայի և կառավարության այդ պատմական որոշումից հետո մեծ փոփոխություններ կատարվեցին Մոսկվայում։ Կառուցման տենդով համակվեց ամբողջ քաղաքը։ Նոր բազմահարկ տներ կառուցվեցին ոչ միայն քաղաքի կենտրոնում, այլև ծայրամասերում։ Նոր հնգամյակում մայրաքաղաքի բնակելի տարածությունը կավելանա 3 միլիոն քառակուսի մետրով։

Սովետական տարիներին անճանաչելի է դարձել նաև քաղաքային տրանսպորտը։ Ձիակառքերի փոխարեն այժմ մայրաքաղաքի լայն, ասֆալտապատ պողոտաներով սլանում են տասնյակ հազարավոր ավտոմեքենաներ, գեղեցիկ տրոլեյբուսները, ավտոբուսներն ու տրամվայները։

Ամբողջ երկիրը հպարտանում է Մոսկվայի մարմարաշեն մետրոյով, որը աշխարհում ամենագեղեցիկն է։

Այլ է այժմ երբեմնի սակավաջուր Մոսկվա գետը։ Մոսկվա-Վոլգա ջրանցքի կառուցումից հետո զգալիորեն մեծացել է այն։ Գետի ափերը պատած են գրանիտով, կառուցվել են նոր հոյակապ



կամուրջներ, որոնց տակից ամեն օր անցնում են նավերը։ Մոսկվան դարձել է երեք ծովերի՝ Սպիտակ, Բալթիկ և Կասպից ծովերի նավահանգիստը։

Պատերազմի տարիներին կառուցվեց Մոսկվա-Սարատով գազուղին, որը վառելագազ է մատակարարում մայրաքաղաքի ձեռնարկություններին ու բնակարաններին։

***

Մոսկվան մեր երկրի գիտության, արվեստի, կուլտուրայի և գրականության խոշորագույն կենտրոնն է։ Այստեղ են գտնվում ՍՍՌՄ Գիտությունների Ակադեմիան, Հասարակական Գիտությունների, Լենինի անվան Գյուղատնտեսական գիտությունների ակադեմիաները, Հրետանային, Բժշկական, Մանկավարժական գիտությունների և այլ ակադեմիաները։ Այդ ակադեմիաների գիտահետազոտական ինստիտուտներում բեղմնավոր աշխատանք են կատարում մոտ 15 հազար գիտական աշխատողներ։ Նրանք իրենց նոր գործերով հարստացնում են համաշխարհային գիտության գանձարանը, էլ ավելի են բարձրացնում մեր Հայրենիքի փառքն ու պատիվը։

Մոսկվան միաժամանակ կադրերի պատ-

րատաման մի վիթխարի գարբնոց է։ Այստեղ կոփվում են տասնյակ հազարավոր կադրեր աշխատանքի ամենազանազան բնագավառների համար։ Մոսկվայում գործում են բազմաթիվ բարձրագույն դպրոցներ, որտեղ սովորում են մոտ 100 հազար ուսանող։

Մայրաքաղաքի տարրական և միջնակարգ դպրոցներում սովորում են ավելի քան կես միլիոն աշակերտ։ Քաղաքը պատված է գրադարանների խիտ ցանցով։ Այստեղ է գտնըվում Լենինի անվան գրադարանը, Մարքս-Էնգելս-Լենինի ինստիտուտը, մայրաքաղաքում կան վեց տասնյակից ավելի թանգարաններ, այդ թվում հանրահռչակ Պատմական թանգարանը, Ռևոլյուցիայի թանգարանը։ Մոսկվայում է գտնվում աշխարհի ամենագեղեցիկ թատրոններից մեկը՝ Մեծ թատրոնը։ Մոսկվայում են ստեղծագործում գրականության և արվեստի ականավոր գործիչները՝ մեր գրողներն ու բանաստեղծները, երաժշտագետներն ու դերասանները, նկարիչներն ու քանդակագործները։



Մոսկվան բազմաթիվ թելերով կապված է ամբողջ երկրի հետ. բավական է ասել, որ յուրաքանչյուր օր նա ընդունում և ուղարկում է մոտ 800 հազար ծրար, մոտ 30 հազար հեռագիր։ Այստեղից ամեն օր երկրի զանազան մասերն է ուղևորվում 115 գնացք։ Հզոր ռադիոկայանների միջոցով Մոսկվայի ձայնը հասնում է միլիոնավոր մարդկանց մեր Հայրենիքի բոլոր կողմերում։

***

Մոսկվա՛։

Ոչ մի երկրում, ոչ մի ժողովուրդ չի սիրում իր մայրաքաղաքն այնպես, ինչպես մեր երկրի ժողովուրդներն են սիրում իրենց հարազատ Մոսկվան։

Մոսկվան լոկ մի անուն չէ, որ կրում է իր վրա մեր հզոր երկրի մայրաքաղաքը։ Մոսկվա բառի մեջ մարմնավորված է ռուս ժողովրդի և նրա հետ միասին բոլոր սովետական ժողովուրդների հերոսական անցյալը։ Այդ անվան մեջ մարմնացած է ազատության և անկախության համար միլիոնների մղած դարավոր պայքարը։

Մոսկվան մեր երջանիկ ներկան է, մեր նվիրական իղձերի, մեր արեգնաշող ապա-

գայի անմարելի ջահակիրը: Մոսկվային են ուղղված աշխարհի միլիոնավոր կեղեքված, իրավազուրկ մարդկանց սիրավառ հայացքները: Մոսկվայի ձայնին ունկնդրում են միլիոնները: Դա ճշմարտության ձայնն է, արդարության ձայնը: Այս տոնական օրերին, երբ սովետական երկրի ժողովուրդները խանդավառությամբ նշում են իրենց փառապանծ մայրաքաղաքի հոբելյանը, սովետական յուրաքանչյուր քաղաքացի ասում է.

— Թող հավե՜տ ապրի Մոսկվան, մեր Հայրենիքի պարծանքն ու փառքը:

— Թող հավե՜տ ծողան Կրեմլի աստղերը:

— Թող ապրի Ստալինը՝ մեր երկրի արևը, մեր պայքարի ու հաղթանակների ճարտարապետն ու դարբինը:

— * —

## ՃԱՊՈՆԻԱՅԻ ԴԵՄ ՀԱՂԹԱՆԱԿԻ ԵՐԿՐՈՐԴ ՏԱՐԵԴԱՐՁԸ

Հիտլերյան Գերմանիայի ջախջախումից ու կապիտուլյացիայից հետո, իմպերիալիստական Ճապոնիան դեռ շարունակում էր պատերազմը Սովետական Միության դաշնակիցների՝ Մեծ Բրիտանիայի ու ԱՄՆ-ի դեմ, որի հետևանքով շարունակվում էին զոհերն ու ժողովուրդների տառապանքները:

ԱՄՆ-ը, Մեծ Բրիտանիան և Չինաստանը 1945 թվականի հուլիսի 26-ին դիմեցին Ճապոնիային, պահանջելով անվերապահ կապիտուլյացիայի ենթարկվել, բայց Ճապոնիան մերժեց այդ պահանջը:

Կապիտուլյացիայի առաջարկը ճապոնական կառավարության կողմից մերժվելու կապակցությամբ, դաշնակիցները դիմեցին Սովետական կառավարությանը՝ առաջարկելով միանալ ճապոնական ագրեսորի դեմ մղվող պատերազմին, նրա ավարտման ժամկետներն ու զոհերի թիվը կրճատելու հա-

մար՝ Սովետական կառավարությունը, հավատարիմ լինելով իր դաշնակցային պարտքին, ընդունեց այդ առաջարկը։

Ընկեր Ստալինը դեռ 1936 թվականին մատնանշեց, որ գոյություն ունի պատերազմական վտանգի երկու օջախ — դրանցից մեկը Հեռավոր Արևելքումն է, Ճապոնիայի գոտում, իսկ երկրորդը՝ Գերմանիայի գոտում։ Ճապոնիան դեռ այն ժամանակ էլ իրեն հանդես էր բերում իբրև խաղաղասեր ժողովուրդների դեմ ագրեսորների դավադրության մասնակից։ Ճապոնական իմպերիալիստները երազում էին համաշխարհային տիրապետության մասին։ 1940 թվականին Գերմանիան, Իտալիան և Ճապոնիան ռազմական դաշինք կնքեցին։

1941 թվականի դեկտեմբերին ամերիկյան Պիրլ-Հարբոր ռազմածովային բազայի վրա կատարած հարձակումով ճապոնական իմպերիալիստները սկսեցին պատերազմը Խաղաղ օվկիանոսում։ Պատերազմի առաջին էտապում ճապոնացիներին հաջողվեց գրավել հսկայական տերիտորիա — նրանք օկուպացրին Հնդկաչինը, Ֆիլիպպինյան կղզիները, Սիամը, Մալայան թերակղզին, Բիրման, Հոլանդական Հնդկաստանը և արդեն մոտե-



նում էին Ավստրալիային ու Հնդկաստանին։

Ճապոնական զավթիչները տասնամյակներ շարունակ Հեռավոր Արևելքում հսկայական վնաս են հասցրել «ոչ միայն մեր դաշնակիցներին՝ Չինաստանին, Ամերիկայի Միացյալ Նահանգներին, Մեծ Բրիտանիային, — ասաց ընկեր Ստալինը 1945 թվականի սեպտեմբերի 3-ին ժողովրդին ուղղված դիմումի մեջ։ — Նրանք ամենալուրջ վնաս են հասցրել նաև մեր երկրին։ Դրա համար էլ մենք նաև մեր հատուկ հաշիվն ունենք Ճապոնիայի հետ»։

Դեռ 1904 թվականին Ճապոնիան օգտվելով ցարական կառավարության թուլությունից, Պորտ-Արթուրի շրջանում ուխտադրժորեն հարձակվեց մեր երկրի վրա։ Ցարական կառավարության պարտության հետևանքով Ճապոնիան զավթեց Հարավային Սախալինը, Կուրիլյան կղզիները։ Նա ձգտում էր Ռուսաստանից խլել ամբողջ Հեռավոր Արևելքը։

1918 թվականին, օգտագործելով երիտասարդ Սովետական իշխանության ծանր դրությունը, Ճապոնիան նորից հարձակվեց մեր երկրի վրա և 4 տարի շարունակ կողոպտում էր Հեռավոր Արևելքը, մինչև որ 1922

թվականին փառապանծ Կարմիր Բանակի ու տեղական պարտիզանների հերոսական ջանքերով ճապոնական ռազմամոլները ջախջախվեցին և վռնդվեցին Հեռավորարևելյան երկրամասի սահմաններից։

1938 թվականին ճապոնական ռազմամոլները նորից հարձակվեցին մեր երկրի վրա՝ Խասան լճի շրջանում, 1939 թվականին՝ Խալխին-Գոլի շրջանում, նպատակ ունենալով կտրել Սովետական Միությունից Հեռավոր Արևելքը։

Ամեն անգամ, երբ ճապոնական ռազմամոլները հարձակվել են Սովետական երկրի վրա, ջախջախիչ հակահարված են ստացել Կարմիր Բանակի կողմից։ Բայց 1904 թվականին կրած ամոթալի պարտությունը մեր ժողովուրդը չէր մոռանում։ Եվ ահա 1945 թվականին հասավ ժամանակը, երբ մեր փառապանծ Սովետական Բանակն իր Կառավարության հրամանով, ամբողջ սովետական ժողովրդի միահամուռ աջակցությամբ և հավանությամբ պետք է ջնջեր նրա պատմության վրայից այդ սև բիծը։ 1945 թվականի օգոստոսի 8-ին Սովետական Միության Կառավարությունը հայտարարեց, որ օգոստոսի 9-ից Սո-



վետական Միությունը գտնվում է Ճապոնիայի դեմ պատերազմի վիճակում։

Օգոստոսի 9-ի առավոտվանից Սովետական Բանակի զորքերը լայն ճակատով անցան Մանջուրիայի ու Պրիմորյեի սահմանները Խաբարովսկի ու Անդրբայկալյան շրջաններում և վճռական հարվածներով առաջ շարժվեցին։

Օգոստոսի 10-ի ընթացքում մեր զորքերի արագաշարժ զորամասերն առաջ շարժվեցին 170 կիլոմետր։ Հեռավորարևելյան Առաջին և Երկրորդ ռազմաճակատների զորքերը՝ Անդրբայկալյան ռազմաճակատի զորքերի փոխգործողությամբ, հաղթահարելով թշնամու ուժեղ դիմադրությունը, ճեղքեցին ճապոնացիների երկաթ-բետոնե պաշտպանության գիծը և սրընթաց առաջ շարժվեցին, իրենց ճանապարհին ոչնչացնելով թշնամու կենդանի ուժն ու ռազմական տեխնիկան։

Հարձակողական գործողությունների 21 օրվա ընթացքում մեր զորքերը գերի վերցրին հակառակորդի ավելի քան 370 հազար զինվոր ու սպա, այդ թվում՝ 65 գեներալ։ Ճապոնական գովաբանված Կվանտունյան բանակը չդիմացավ Կարմիր Բանակի հուժկու հարվածներին և օրեցօր արյունաքամ լինե-

լով վայր դրեց զենքն ու անվերապահ կապիտուլյացիայի ենթարկվեց:

Հեռավոր Արևելքում Կարմիր Բանակի տարած փայլուն հաղթանակը բազմապատկեց սովետական զենքի փառքը:

Մարտական գործողությունների մեկ ամսվա ընթացքում լիովին ազատագրվեց Մանջուրիան, որը 14 տարի տառապում էր ճապոնական զավթիչների լծի տակ: Սովետական զորքերը հաղթանակի դրոշը բարձրացրին ռուսական հին ռազմածովային ամրոց Պորտ-Արթուրի վրա, մեր Հայրենիքին վերադարձրին ռուսական վաղեմի հողերը՝ Հարավային Սախալինը և Կուրիլյան կղզիները:

Սովետական Միությունը, որն իր ուսերի վրա կրեց հիտլերյան Գերմանիայի դեմ մղած պայքարի հիմնական ծանրությունը և փրկեց քաղաքակրթությունը գերմանաֆաշիստական բարբարոսներից, աչքի ընկնող դեր խաղաց նաև իմպերիալիստական ճապոնիայի ջախջախման գործում:

1945 թվականի սեպտեմբերի 2-ին ճապոնացիները ստորագրեցին անվերապահ կապիտուլյացիայի պայմանները: «Ծովերում



ու ցամաքի վրա գլխովին ջախջախված, Միավորված Ազգերի զինված ուժերով բոլոր կողմերից շրջապատված ճապոնիան իրեն պարտված ճանաչեց և զենքը ցած դրեց» (Ստալին): ՍՍՌՄ Գերագույն Սովետի Նախագահության Հրամանագրով 1945 թվականի սեպտեմբերի 3-ը հայտարարվեց ճապոնիայի դեմ Հաղթանակի օր: Այդ օրը հավիտյան կմնա առաջադեմ մարդկության հիշողության մեջ այնպես, ինչպես որ 1945 թվականի մայիսի 9-ը՝ Գերմանիայի դեմ տարած Հաղթանակի օրը:

Երկրորդ համաշխարհային պատերազմն ավարտվեց այն հրահրողների—արևմուտքում՝ Գերմանիայի, արևելքում՝ ճապոնիայի լիակատար ջախջախումով: Ամբողջ սովետական ժողովուրդը խոր գոհունակության զգացմունքով լսեց իր մեծ առաջնորդ, իմաստուն զորավար, Գեներալիսիմուս Ստալինի ուղերձը: Ընկեր Ստալինն ասաց. «Մեր Սովետական ժողովուրդն ուժ և աշխատանք չխնայեց հանուն հաղթանակի: Մենք ապրել ենք ծանր տարիներ: Բայց այժմ մեզնից յուրաքանչյուրը կարող է ասել՝ մենք հաղթեցինք: Այժմյանից մենք կարող ենք մեր Հայրենիքը փրկված համարել Արևմուտքում՝

գերմանական արշավանքի և Արևելքում ճապոնական արշավանքի սպառնալիքից։ Հասավ բաղձալի խաղաղությունն ամբողջ աշխարհի ժողովուրդների համար։

Սովետական զենքի փայլուն հաղթանակը ճապոնական իմպերիալիստների դեմ, ոչ միայն վերացրեց մեր երկրի համար պատերազմի սպառնալիքը Հեռավոր Արևելքում, այլև ճապոնականստրկությունից ազատագրեց ասիական շատ ժողովուրդների — Մանջուրիան նորից դարձավ Չինական ռեսպուբլիկայի մի մասը, կորեական ժողովուրդը ազատվեց ճապոնական լծից, վերջ դրվեց Ճապոնիայի տիրապետությանը նրա օկուպացրած տերիտորիաներում։ Կարմիր Բանակը Հեռավոր Արևելքում ևս կատարեց իր ազատագրական մեծ միսիան։

Մենք հաղթեցինք, որովհետև անսպառ են սովետական ժողովրդի ուժերը, որովհետև անսպառ է նրա սերը դեպի սոցիալիստական հայրենիքը, դեպի հարազատ, մեծ Ստալինը։ Մենք հաղթեցինք, որովհետև մեր հաղթանակների ոգեշնչողն ու կազմակերպողն է Լենինի-Ստալինի փառապանծ պարտիան։ Սովետական Միությունը, որը պատերազմից դուրս եկավ ավելի ամրապնդված



և ավելի կոփված, ամբողջ մարդկության կողմից ճանաչվեց իբրև ընդհանուր խաղաղության և անվտանգության զորեղ գործոն։

Մեր Ռեսպուբլիկայի աշխատավորները ևս մեծ ծառայություններ ունեն գերմանական զավթիչների ու ճապոնական իմպերիալիստների ջախջախման գործում։ Հայ ժողովրդի զավակները թե՛ ռազմաճակատում, և թե՛ թիկունքում անձնվիրաբար պայքարում էին թշնամու դեմ հաղթանակի գործի համար։

***

Երկու տարի է անցել երկրորդ համաշխարհային պատերազմից հետո։ Պատերազմն ավարտվելու հաջորդ օրվանից Սովետական ժողովուրդն իր փառապանծ պարտիայի կոչով անցավ ժողովրդական տնտեսության վերականգնման ու հետագա զարգացման խաղաղ աշխատանքին։

Այդ ժամանակամիջոցում մեզ մոտ հսկայական աշխատանք է կատարված հետպատերազմյան ստալինյան հնգամյակի պլանները կատարելու և գերակատարելու ուղղությամբ։ Սովետական ժողովուրդը ձեռնամուխ է եղել երկրի ժողովրդական տնտեսության վերելքի և ամրապնդման արմատա-

կան խնդրին, այն է՝ կարճ ժամանակվա ընթացքում զգալիորեն գերազանցել տնտեսության մինչպատերազմյան մակարդակը, ապահովել բնակչության կենսամակարդակի զգալի բարձրացումը։

ՀամԿ(բ)Պ Կենտկոմի փետրվարյան պլենումի պատմական որոշումը՝ «Հետպատերազմյան ժամանակաշրջանում գյուղատնտեսության վերելքի միջոցառումների մասին» հսկայական քաղաքական և ժողովրդա-տնտեսական նշանակություն ունի մեր երկրի կյանքում։ Սովետական գյուղացիությունը, ոգեշնչված պարտիայի այդ որոշումով, բոլոր ուժերը գործադրում է, և մեծ առաջնորդ ընկեր Ստալինի իմաստուն ղեկավարությամբ կապահովի գյուղատնտեսության հարաճուն վերելքը, որը հնարավորություն կտա ամենակարճ ժամանակամիջոցում ստեղծել պարենամթերքի առատություն բնակչության համար, հումքի առատություն՝ թեթև արդյունաբերության համար և կուտակել պետության համար անհրաժեշտ պարենային ու հումքի ռեզերվներ։

Ժողովրդական տնտեսության վերականգնման և զարգացման գործում մեծ դեր է խաղում սովետական ինտելիգենցիան, որը



ուժ ու եռանդ չի խնայում գիտության և տեխնիկայի հետագա զարգացման համար, ի բարօրություն մեր Հայրենիքի։

Սովետական բազմամիլիոն ու բազմազգ ժողովուրդը Ճապոնիայի դեմ տարած հաղթանակի երկրորդ տարեդարձը դիմավորում է Ստալինյան նոր հնգամյակի կատարման ասպարեզում ձեռք բերած փայլուն հաջողություններով։ Մտնելով Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ Ռևոլյուցիայի 30-ամյակի պատվին ծավալված Համամիութենական սոցիալիստական մրցության մեջ, մեր երկրի բանվոր դասակարգը, աշխատավոր գյուղացիությունը և սովետական ինտելիգենցիան անդուլ պայքար են մղում հետպատերազմյան հնգամյակի երկրորդ տարվա պլանները մինչև Մեծ տոնի օրը կատարելու ու գերակատարելու, փառավոր տարեդարձը նորանոր փայլուն նվաճումներով նշանավորելու համար։

Մեծ առաջնորդ ընկեր Ստալինի ղեկավարությամբ սովետական ժողովուրդը հաղթանակով դուրս եկավ Հայրենական մեծ պատերազմի ծանր փորձություններից։ Այդ նույն փորձված և իմաստուն ղեկավարությամբ սովետական ժողովուրդն այժմ անձնվիրաբար

պայքարում է ժողովրդական տնտեսության վերականգնման ու զարգացման հնգամյա պլանները կենսագործելու համար։

Իմպերիալիստական Ճապոնիայի դեմ տարած հաղթանակի օրը ամբողջ սովետական ժողովուրդը դիմավորում է նոր, փայլուն հաղթանակներով՝ արդյունաբերության և գյուղատնտեսության մեջ, կուլտուրայի և գիտության ֆրոնտում։

Բայց մի շարք երկրներում՝ Չինաստանում, Ինդոնեզիայում, Հունաստանում դեռ շարունակվում է արյունահեղությունը, որը ուղղակի և անուղղակի ճանապարհով խրախուսում են ԱՄՆ-ի և Անգլիայի ռեակցիոն տարրերը։

Սովետական Միությունը, հենվելով իր տնտեսական ու քաղաքական անող հզորության վրա, իր հերոսական զինված ուժերի վրա, հետևողականորեն վարում է խաղաղության քաղաքականություն, մնալով ամբողջ աշխարհում խաղաղության և անվտանգության հուսալի հենարանը։

Դ. ԴԱԼԼԱՔՅԱՆ



## ԱՌԱՋԱՎՈՐՆԵՐԻ ՕՐԻՆԱԿՈՎ

1943 թվի մայիսին, Հայրենական Պատերազմի պայմաններում, ՍՍՌՄ Ժողկոմսովետը որոշում ընդունեց Կիրովականում Կորդայի ֆաբրիկա կառուցելու մասին։ Հենց նույն տարում էլ սկսվեց ֆաբրիկայի շինարարությունը։ Ֆաբրիկայի նպատակը նշվեց հենց սկզբից։ Միութենական նշանակություն ունեցող այդ նորակառույցը պետք է սպասարկեր Երևանի Ավտոդողերի գործարանին, ապահովելով նրան կորդայով—ավտոդողերի թելային գործվածքով։

Այստեղ եկան շինարարների խմբերը։ Ֆաբրիկայի առաջին հիմնադիրները բացառապես երիտասարդներ էին։ Արամ Սարգըսյանի, Ռաֆիկ Միրզոյանի, Ժորա Աղալյանի, Սարգիս Մկրտչյանի երիտասարդական բրիգադաները աճեցին ֆաբրիկայի հետ միասին։

Ֆաբրիկայի շենքի կառուցմանը հետևեց

մեքենաների մոնտաժը, որը երիտասարդ կոլեկտիվից պահանջեց լարված աշխատանք։ Մոնտաժնիկները մեկը-մյուսի ետևից տեղադրում էին բարդ տիպի ծանր մեքենաներն ու դազգահները, միաժամանակ ուշիուշով ուսումնասիրում, յուրացնում դրանց տեխնիկան։

Մոնտաժին զուգընթաց պատրաստվում էին ապագա ֆաբրիկայի բանվորական կադրերը։ Կարճ ժամանակամիջոցում այստեղ պատրաստվեցին 80-ից ավելի մանողներ, գզողներ, ոլորողներ, գործողներ, սանրողներ, մեքենավարներ և այլ մասնագիտության բանվորներ ու բանվորուհիներ։

1946 թվականի կեսերին ավարտվեցին մեքենաների մոնտաժը և էլեկտրասարքավորման աշխատանքները։ Արտադրական կորպուսի ընդարձակ սրահները լցվեցին մեքենաների աղմուկով։ Մեքենաների փորձարկումը փայլուն արդյունք տվեց։ Ֆաբրիկան, որ պատրաստ էր արտադրանք տալու համար, մտավ միութենական գործող ձեռնարկությունների շարքը։

Ստալինյան նոր հնգամյակի առաջին տարում ֆաբրիկայի երիտասարդ կոլեկտիվի առջև խնդիր էր դրված հիմնովին յուրացնել



մեքենաների տեխնիկան, արտադրության տեխնոլոգիական պրոցեսները, բարձրացնել աշխատանքի արտադրողականությունը և լրիվ կատարել պետական առաջադրանքը։

Կոլեկտիվին այդ հաջողվեց։ Անցյալ տարվա մի քանի ամսվա ընթացքում ֆաբրիկան երկրին տվեց հազարավոր մետր կորդա, տասնյակ տոննաներ մանվածք։

Հնգամյակի երկրորդ տարում ֆաբրիկայի կոլեկտիվի առջև կանգնեցին նոր և լուրջ խնդիրներ։ Ֆաբրիկայի դիրեկցիան և պարտիական ու պրոֆմիութենական կազմակերպությունները կոլեկտիվի բոլոր ուժերը մոբիլիզացրին որպեսզի լրիվ կատարվի ու գերակատարվի 1947 թվականի պլանը։

Լենինգրադի արդյունաբերական ձեռնարկությունների բանվորների ու ինժեներատեխնիկական աշխատողների հայրենասիրական դիմումը լայն արձագանք և ջերմ ընդունելություն գտավ ֆաբրիկայում։ Կոլեկտիվի բազմամարդ ժողովում բանվորներն ու բանվորուհիները որոշեցին մտնել Համամիութենական սոցիալիստական մրցության մեջ և գործարանի տարեկան պլանը կատարել Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ

ոլյուցիայի 30-ամյակի օրը — 1947 թվականի նոյեմբերի 7-ին։

Իրենց պարտավորությունների մեջ, բանվորները խոստացան 10 տոկոսով բարձրացնել աշխատանքի և 18,6 տոկոսով մեքենայական սարքավորման արտադրողականությունը, իջեցնել արտադրանքի ինքնարժեքը, ընթացիկ տարում ընդարձակել ֆաբրիկայի արտադրական կարողությունը, շահագործման հանձնել ավելի քան 4400 մանվածքային իլիկ, տեղադրել կորդի նոր մեքենաները։

Ստանձնած պարտավորությունները կատարելու համար կոլեկտիվը լայնորեն ծավալեց սոցիալիստական մրցությունը։ Մրցության մեջ ընդգրկվեցին 204 բանվորներ ու բանվորուհիներ։ Բոլոր ցեխերին և ագրեգատներին ամրացվեցին փորձված ագիտատորներ։ Պատրաստվեց արտադրական ցուցանիշների տախտակ, տեմպերի տախտակ, բոլոր ցեխերում սահմանվեցին փոխանցիկ դրոշներ, սկսվեց պայքարը արտադրության մեջ առաջնություն ձեռք բերելու համար։

Պլանների կատարման ու գերակատարման գործում ուժեղ խթան հանդիսացավ բանվոր-



ների աշխատանքի վարձատրման նոր սիստեմի՝ պրոգրեսիվ-պրեմիալ սիստեմի արմատավորումը, որը անհատական շահագրգռվածություն առաջ բերեց բանվորների մեջ և դրա հետևանքով դնալով ավելացավ պլանը գերակատարողների թիվը։

Ագիտատորների ջանքերով բոլոր բանվորների գիտակցությանը հասցվեց ֆաբրիկայի այս տարվա պլանների կատարման նշանակությունը։

Ֆաբրիկայի դիրեկցիան մշակեց նաև ըստանձնած պարտավորությունների կատարման տեխնիկական միջոցառումները։ Կարգավորվեց հումքի մատակարարման գործը — ֆաբրիկան անընդմեջ ապահովվեց բամբակի հումքով։ Բանվորների տեխնիկական որակը բարձրացնելու համար ֆաբրիկայում կազմակերպվեցին տեխնիկական ուսուցման 4 խմբակ, անհատական ուսուցման ցանցում ընդգրկվեցին երիտասարդ բանվորներն ու բանվորուհիները։

Այս բոլոր ձեռնարկումների հետևանքով ֆաբրիկան գերակատարեց ընթացիկ տարվա ինչպես 6 ամսվա, այնպես էլ հուլիսի առաջադրանքները։

Անցած ամիսների համեմատությամբ

ֆաբրիկայում զգալիորեն իջել է արտադրանքի ինքնարժեքը։

Մեծ ուշադրություն է նվիրվում նաև արտադրության տեխնոլոգիական պրոցեսների բարելավմանը և մեքենաների արտադրողականությունը բարձրացնելուն։ Վերակառուցվել են 6 մանող մեքենաները, որոնք առաջ աշխատում էին շնուրային փոխանցման սիստեմով և ունեին ցածր արտադրողականություն։ Այժմ, ֆաբրիկայի երիտասարդ ռացիոնալիզատոր Կարո Մանուկյանի առաջարկությամբ, այդ մեքենաները աշխատում են ժապավենային փոխանցման սիստեմով։ Գզարանի ցեխում դրվել է հումքը պնևմատիկ կերպով քրքրող մեծ մեքենա։

Կազմակերպված է հսկողություն իլիկների անընդմեջ աշխատանքի նկատմամբ, որի հետևանքով պահանջվող շաբլոնային ձևը իլիկների տրամագիծը չափելու համար կիրառվում է լիակատար կերպով։ Ցեխի կոլեկտիվը հասել է այն բանին, որ պահպանվում է մանվող թելերի ստանդարտը, փաթթող և ոլորող ցեխերում դրվել են Բալկիրովի սիստեմի հանգույցակապեր, որոնց շնորհիվ ընդմիշտ վերացել են թելերի կտրատման դեպքերը և իլիկների պարապուրդը։



Ահա թե ինչու, եթե ընթացիկ տարվա առաջին եռամսյակում յուրաքանչյուր 1000 իլիկ մի ժամում տալիս էր 217 կիլոգրամ թել, ապա երկրորդ եռամսյակում այն բարձրացավ մինչև 445 կիլոգրամի։ Ֆաբրիկայի բանվորների մեծ մասը այժմ անցել է բարձր սպասարկման սիստեմին։ Անցյալ տարվա 218-ի դիմաց այս տարի յուրաքանչյուր բանվոր միջին հաշվով սպասարկում է 500—870 իլիկ։

Այս հաջողությունների իսկական աղբյուրը ֆաբրիկայի կադրերն են, առաջին հերթին ստախանովականները, առաջավորները։

Ահա գզարան ցեխը։ Այստեղ դիզված են բամբակի հսկայական հակերը։ Ենթավարպետ Ռ. Միրզոյանը, բանվորներ Շ. Ծարսեզյանը, Խ. Ղազարյանը ցեխի աշխույժ հրամանատարներն են։ Նրանց ղեկավարությամբ են գործում հումք գզող հսկայական մեքենաները։

Ահա և սանրման ցեխը։ Այստեղ է Գ. Ղամբարյանի բրիգադան, որի անդամները բացառապես երիտասարդներ են և աշխատում են այստեղ գործարանի հիմնադրման օրից։

Ժապավենների ցեխում աշխատանքը պա-

հանջում է ճկունություն, ուշադրության կենտրոնացում։ Բավական է մի փոքր շեղում այդ պահանջներից և ահա մաղանման սպիտակ փաթիլները դուրս են ընկնում հավարավոր խլիկներից և ստացվում է խոտան, կանգ է առնում մեքենան և պարապուրդ տալիս։ Այդ լավ են հասկանում ցեխի բանվորուհիները։ Ահա կոմերիտուհի Նինա Պետրոսյանը, նրա փորձով են սովորել շատերը։ Նա անձամբ մեքենա վարել է սովորեցրել ներդաշնակած Ծորժեստա Քիլիսյանին, որն այժմ մրցում է իր վարպետի հետ։ Նրանք բոլորն էլ աշխատում են ինքնուրույն, տիրապետում են իրենց գործի տեխնիկային։ Նրանք կատարում են օրական երկու նորմա։

Աշխատանքի հիանալի փորձ են կուտակել ներդաշնակածներ Տոլմաչյան քույրերը, Նվա Կարայանը, Լուսիկ և Սիլվա Բողոսյանները։ Օրվա առաջադրանքը նրանք կատարում են 200 տոկոսից ոչ պակաս։

Երկու խոշոր գործող դազգահների առջև թելի հակերի մի ամբողջ լեռ է գոյացել։ Վալյա Մորոզովան, որը անձամբ մասնակցել է մեքենաների տեղադրմանը, այժմ ղեկավարում է գործող մեքենայի աշխատան-



քը։ Հաստոցի վրա փաթաթվում է սպիտակ գործվածքը, որը այնքան կարևոր է ավտոդողերի արտադրության համար։

Ֆաբրիկայի այս ցեխը սպասարկում է Երևանի ավտոդողերի գործարանին։ Առաջին արտադրանքը Երևան փոխադրվեց այս տարվա սկզբին։

Նոր հնգամյակի այս նորակառույցը օրըստօրե լայնանում և ընդարձակվում է։ Ավելի ու ավելի է մեծանում նրա արտադրական կարողությունը։ 1950 թվականին ֆաբրիկան կարտադրի 7 անգամ ավելի կորդ, քան 1946 թվականին։ Դրան համապատասխան բարձրանալու է մեքենաների արտադրողականությունը։ Նոր հնգամյակի առաջին տարվա յուրաքանչյուր 1000 իլիկի մեկ ժամվա արտադրանքի համեմատությամբ 1950 թվականին աճը կկազմի 60 տոկոս։

Այս թվերը լավագույն երաշխիքն են այն փայլուն հեռանկարների, որոնք բացվում են Կիրովականի Կորդայի ֆաբրիկայի առջև Ստալինյան նոր հնգամյակում և որի համար անձնվեր պայքար են մղում նորակառույցի էնտուզիաստները։

Ա. ԲԱՂԴԱՍԱՐՅԱՆ

## Ի՞՛ՆՉ Է ԹԱՔՆՎԱԾ ԵՎՐՈՊԱԿԱՆ ԵՐԿՐՆԵՐԻՆ „ՕԳՆԵԼՈՒ" ՊԼԱՆՆԵՐԻ ՀԵՏԵՎՈՒՄ

Հունիսի սկզբներին ԱՄՆ-ի պետական քարտուղար (արտաքին գործերի մինիստր) Մարշալը հանդես եկավ ճառով, որի մեջ հայտարարեց, թե Միացյալ Նահանգները պատրաստ են «օգնություն» ցույց տալու եվրոպական պետությունների տնտեսական վերականգնման գործում։ Սակայն Մարշալը ոչինչ չասաց, թե ի՞նչ չափերով, ի՞նչ ժամկետներով և ի՞նչ պայմաններով կարող է եվրոպական երկրներին ցույց տրվել ամերիկյան այդ «օգնությունը»։

Մարշալի առաջարկին, կամ «Մարշալի պլանին», ինչպես այն անվանում են մամուլում, արձագանքեցին Անգլիայի արտաքին գործերի մինիստր Բեվինը և Ֆրանսիայի արտաքին գործերի մինիստր Բիդոն, որոնք



առաջարկեցին Փարիզում հրավիրել ՍՍՌ Միության, Ֆրանսիայի ու Անգլիայի արտաքին գործերի մինիստրների հատուկ խորհրդակցություն։

Այդ խորհրդակցությունը բացվեց Փարիզում, հունիսի 27-ին։ Արդեն մի քանի նիստից հետո պարզվեց, որ սկզբունքային տարաձայնություն գոյություն ունի մեկ կողմից Անգլիայի ու Ֆրանսիայի և մյուս կողմից Սովետական Միության դելեգացիաների տեսակետների միջև։ Անգլո-ֆրանսիական առաջարկները նախատեսնում էին ստեղծել այսպես կոչված՝ «ղեկավար կոմիտե», որը պետք է մշակեր մի համապարփակ տնտեսական ծրագիր եվրոպական բոլոր երկրների համար, և ապա այն ներկայացներ Միացյալ Նահանգներին։ Այդ կոմիտեի խընդիրներն էին լինելու՝ պարզել եվրոպական պետությունների ռեսուրսներն ու կարիքները, որոշել այդ երկրներում արդյունաբերության գլխավոր ճյուղերի զարգացման ուղղությունը։ Դրանից հետո միայն, կոմիտեն պետք է սահմաներ ամերիկյան տնտեսական «օգնություն» ստանալու հնարավորությունը։

Այդպիսի առաջարկ մտցնելով, Անգլիան

և Ֆրանսիան նպատակ ունեին «Ղեկավար կոմիտեն» օգտագործել մանր երկրների վրա ճնշում գործադրելու, նրանց էկոնոմիկան իրենց շահերին ենթարկելու համար, ինչպես նաև ԱՄՆ-ի շահերին, որի վարկերը պետք է իբրև հրապուրանք ծառայեին եվրոպական մանր պետությունների համար։

Սովետական դելեգացիան մերժեց անգլո-ֆրանսիական պլանը, որովհետև դա կնշանակեր եվրոպական ուժեղ պետությունների կամքը փաթաթել եվրոպական մյուս երկրների վզին, կնշանակեր միջամտել այդ երկրների ներքին գործերին և խախտել նրանց անկախությունը։

Սովետական դելեգացիայի ղեկավար Վ. Մ. Մոլոտովը հայտարարեց, թե «սովետական կառավարությունը չի կարող օգնել որևէ մեկին, որպեսզի վերջինս իր գործերը հաջողացնի ուրիշների հաշվին, պակաս չափով ուժեղ կամ փոքր պետությունների հաշվին, քանի որ այդ բանն ընդհանուր ոչինչ չունի պետությունների միջև նորմալ համագործակցության հետ»։

Պետք է նաև նշել, որ անգլո-ֆրանսիական առաջարկները նախատեսում են գերմանական ռեսուրսների օգտագործումը, թեև



հայտնի է, որ մինչև այժմ դեռ բավարարված չեն գերմանական ագրեսիայից տուժած պետությունների արդարացի ռեպարացիոն պահանջները։

Անգլո-ֆրանսիական առաջարկների կենսագործումը կարող է հասցնել այն բանին, որ Անգլիան ու Ֆրանսիան, իրենց հետևից գնացող մի խումբ երկրների հետ միասին, կանջատվեն եվրոպական մնացած պետություններից, որն իր հերթին Եվրոպան կպառակտի երկու բանակի և նոր դժվարություններ կստեղծի նրանց փոխհարաբերությունների մեջ։ «Այդ դեպքում,— ասաց Վ. Մ. Մոլոտովը,— ամերիկյան վարկերը կծառայեն ոչ թե Եվրոպայի տնտեսական վերականգնման գործին, այլ եվրոպական մեկ երկրների օգտագործմանը Եվրոպական մյուս երկրների դեմ այն իմաստով, ինչպես որ այդ բանն իրենց համար օգտակար կհամարեն տիրապետության ձգտող մի քանի ուժեղ տերությունները»։ Սովետական կառավարության անունից Վ. Մ. Մոլոտովը կարևոր համարեց նախազգուշացնել Անգլիայի և Ֆրանսիայի կառավարություններին այնպիսի գործողությունների հետևանքներից, որոնք ուղղված են ոչ թե եվրոպական երկր-

ների ջանքերի միավորմանը նրանց տնտեսական վերականգնման գործում, այլ ձըգտում են այնպիսի նպատակների, որոնք ընդհանուր ոչինչ չունեն Եվրոպայի ժողովուրդների իսկական շահերի հետ։

Սովետական Միության դիրքը, որը հրաժարվեց մասնակցել Եվրոպայի ստրկացման ամերիկյան և անգլո-ֆրանսիական պլանի իրագործմանը, անգլո-սաքսոնական երկըրների մամուլի կողմից օգտագործվեց այն բանի համար, որ ՍՍՌՄ-ին բացեիբաց մեղադրեն խորհրդակցությունը ձախողելու մեջ և ուղղակիորեն խոսեն այն մասին, թե Եվրոպան երկու բանակի է բաժանվում։ Խորհրդակցության նախաձեռնողները ակներևաբար վաղօրոք նպատակ ունեին ձախողելու խորհրդակցությունը և մեկուսացնելու Սովետական Միությանը։

Դեմոկրատական մամուլը Փարիզի խորհրդակցության բացման նախօրյակին նըշում էր, թե միայն այն փաստը, որ ՍՍՌՄ-ի արտաքին գործերի մինիստրը մասնակցում է խորհրդակցության աշխատանքներին, երաշխիք է, որ փոքր երկրների շահերը չեն ոտնահարվի։ Հենց այս բանն էլ անգլո-ֆրանսիական խաղի հեղինակներին դուր



չէր գալիս։ Պատահական չէ, որ խորհրդակցությունը փակվելուց անմիջապես հետո անգլիական «Թեյմ էնդ Թայդ» ժուռնալը ցնծությամբ գրում էր, թե «հիմա ճանապարհը բաց է, և Ֆրանսիան ու Անգլիան կարող են իրենց վրա վերցնել եվրոպական ռեսուրսների հաշվառման ղեկավարությունը...», իսկ անգլիական «Ռեյնոլդս նյուս» թերթը խոստովանում էր, թե «այժմ ամերիկյան դոլլարներ ստանալու հարցում Անգլիայի երաշխիքներն ավելի մեծ են, քան թե դրանք կլինեին, եթե Ռուսաստանը միանար պլանի իրագործմանը»։

Իրենց վրա վերցնելով ամերիկյան կապիտալի գործակատարների դերը, Բեվինը և Բիդոն եռանդուն կերպով ձեռնամուխ եղան «Մարշալլի պլանին» նվիրված նոր խորհրդակցության նախապատրաստմանը։ Այդ խորհրդակցությանը հրավիրվում էին եվրոպական 22 պետությունների ներկայացուցիչները (բացառությամբ Իսպանիայի)։ Անգլո-ֆրանսիական մամուլն ուժգին մշակում էր եվրոպական երկրների հասարակական կարծիքը, ճգնելով ցույց տալ, թե Բեվինի և Բիդոյի պլանի ընդունումը համարյա

թե միակ նրաշխիքն է տնտեսական քաոսից ու աղետից խուսափելու համար։

Սակայն դեմագոգիկ պրոպագանդան չկարողացավ ճանապարհից շեղել այն երկրների կառավարություններին, որոնք չեն ցանկանում իրենց էկոնոմիկան ենթարկել ամերիկյան կապիտալիստների շահերին, և հույս են դնում գլխավորապես իրենց սեփական ուժերի վրա, մյուս պետությունների հետ իրավահավասար, փոխադարձաբար օգտակար տնտեսական համագործակցության վրա։ Հուլիսի 12-ին Փարիզում բացված խորհրդակցությունը բնավ չի կարելի համարել եվրոպական երկրների կոնֆերենցիա, քանի որ հրավիրված 22 պետություններից իրենց ներկայացուցիչներն էին ուղարկել միայն 14-ը։ Ութ պետություն հրաժարվեցին մասնակցել «եվրոպական համագործակցության» անգլո-ֆրանսիական խաղին։ Ալբանիան, Բուլղարիան, Հունգարիան, Լեհաստանը, Ռումինիան, Ֆինլանդիան, Չեխոսլովակիան և Հարավսլավիան չցանկացան վտանգի տակ դնել իրենց սուվերենիտետը (անկախությունը) հօգուտ «դոլլարի քաղաքականության», ճնշման և անիրավահավասարության քաղաքականության կիրառողների։



Այդ պետությունների ժողովուրդները տեսնում են, թե ինչի է վերածվել ամերիկյան «օգնությունը» այնպիսի երկրների ինչպես Հունաստանն ու Թյուրքիան, որոնք ընկել են Ամերիկայի Միացյալ Նահանգներից լիակատար կախման մեջ ու նրա լիակատար վերահսկողության տակ։

Խորհրդակցության կազմակերպիչները ձգնում էին իրենց անհաջողությունը թաքցնել այնպիսի խոսակցություններով, թե «դատարկ տեղերը երբևիցե կզբաղեցվեն», և որպես խորհրդակցության արժանիք հատկապես նշում էին նրա արագ անցկացումն ու նրա մասնակիցների միահամուռությունը։ Սակայն միահամուռությունը նույնպես բացակայում էր, իսկ արագությունը միայն վկայում է, որ ձգտում գոյություն ունի փակելու փոքր երկրների բերանը և նրանց ստիպելու հաստատել Բեվինի ու Բիդոյի նախապատրաստած որոշումները, որոնք թելադրված են ամերիկացիների կողմից։ Այս ամենը տագնապի և անհանգստության օրինական զգացմունք է առաջացրել խորհրդակցության մի շարք մասնակիցների, մա-

նավանդ Սկանդինավյան երկրների ներկայացուցիչների մեջ։

Փարիզի խորհրդակցությունն ավարտվեց այսպես կոչված «ժամանակավոր հատուկ կազմակերպության» ստեղծումով, որի ցուցանակի տակ թաքնվում է Արևմտյան բլոկ ստեղծելու վերաբերյալ Բեվինի փայփայած իդեան։ Բևինը և Բիդոն ԱՄՆ-ի որոշ շրջանների ցուցումով ձգտում էին Եվրոպայի պառակտմանը, Սովետական Միության մեկուսացմանը, և եթե նրանց դիտավորությունները չհաջողվեցին այնչափով, որքան նրանք հույս ունեին, ապա այդ ցույց է տալիս, որ եվրոպական ժողովուրդների քաղաքական գիտակցությունն աճել է, որ նրանք պատրաստ են պաշտպանելու իրենց քաղաքական ու տնտեսական անկախությունը։

Իր էությամբ Սովետական Միությանը թշնամի արևմտյան բլոկի կազմակերպիչները փորձում են այդ բլոկի մեջ ներգրավել ոչ միայն դաշնակից այն երկրներին, որոնք հնազանդ հետևում են Անգլիայի ու ԱՄՆ-ի քաղաքական գծին, այլև երեկվա թշնամի պետություններին՝ Ավստրիային ու Իտալիային, ինչպես նաև Պորտուգալիային



ու Էյրեին, որոնք պատերազմի ժամանակաշրջանում օգնում էին թշնամի տերություններին։ Նրանք ոչ փոքր տեղ են տալիս Արևմտյան Գերմանիային։ Արևմտյան բլոկի մի քանի առավել մոլի քարոզիչներ արդեն բացեիբաց դնում են գերմանական ռազմական հզորությունը վերականգնելու և Գերմանիան «արևմտյան քաղաքակրթության դաշնակից» դարձնելու հարցը։

Լ. ԿՐԱՅԵՎ

# Ի՞ՆՉՊԵՍ ՏԱՐԱԾԵԼ ԱՌԱՋԱՎՈՐՆԵՐԻ ՓՈՐՁԸ

Արդյունաբերության և գյուղատնտեսության առաջավորները մեր Հայրենիքի ոսկե ֆոնդն են կազմում։ Նրանք կատարելապես տիրապետելով տեխնիկային, աշխատում են նոր մեթոդներով, համարձակ ու խելացի ներդրումներ են կատարում աշխատանքի պրոցեսում և արտադրական պլանները կատարում ու գերակատարում են մի քանի անգամ։ Առաջավորները միշտ ձգտում են առաջ գնալ, նմանվել ավելի լավերին։ Նրանք առաջ են մղում նաև հետ մնացողներին՝ ընդհանուր վերելքի համար։

Առաջավորները մեր Հայրենիքի բարգավաճման համար պայքարող առաջամարտիկներ են։

Ագիտատորի աշխատանքի մեջ կարևոր տեղ է գրավում առաջավորների փորձի տա-



րածումը, հետ մնացողներին առաջավորների մակարդակին հասցնելը, որովհետև սոցիալիստական մրցության ուժը նրա մասսայականության մեջ է։

Բայց ի՞նչպես տարածել առաջավորների փորձը։

Առաջավորների փորձի տարածման լավագույն ձևերից է ագիտատորի զրույցն առաջավորների մասին։ Այստեղ կարևորն այն է, որ խելացի և լավ անցկացվի զրույցը։ Պետք է առաջավորներին ներկայացնել ոչ թե ընդհանրապես, ընդհանուր խոսքեր ասել նրանց մասին, այլ պատմել նրանց աշխատանքի մեթոդների մասին, ցույց տալ թե ո՞րն է նրանց աշխատանքում յուրահատուկը, նորը, ցույց տալ համոզիչ կերպով, փաստերով, համեմատություններ անելով։

Զրույցի ժամանակ ագիտատորը միշտ պետք է հիշի, որ իր պարտականությունն է պատասխանել այն հարցին, թե առաջավորներն ինչպի՞սի ցուցանիշների են հասել և ի՞նչպես են հասել։ Իսկ այդ շնորհակալ խնդիրը կատարելու համար ագիտատորը պետք է նախ և առաջ ինքը լավ գիտենա գործարանի կամ կոլխոզի արտադրությունը։

Կարևոր է, երբ ագիտատորը առաջավոր-

ների մասին զրույց անցկացնելիս անհատական մոտեցում է ցուցաբերում հետ մնացողների նկատմամբ, զրուցում է նրանց հետ, ցույց է տալիս նրանց թերությունները և առաջավորների աշխատանքի առավելությունները, նշում է առաջավոր դառնալու ուղիները։

Հասկանալի է, որ ագիտատորը խոսելով առաջավորների մասին, չի կարող անցնել այն բանի կողքով, որ կան առաջավոր օղակներ, բրիգադաներ, ցեխեր, գործարաններ, կոլխոզներ, շրջաններ և այլն։ Անհրաժեշտ է ցույց տալ, թե ինչպես առաջավորների փորձի լայն տարածումը կբազմապատկի առաջավորների շարքերը և մեզ մոտ ավելի շատ կլինեն առաջավոր գործարաններ ու կոլխոզներ։

Երևանի № 3 կոշիկի գործարանի ագիտատոր Դ.Մալխասյանը երբ զրույց էր անցկացնում Մոսկվայի «Պարիժսկայա Կոմունա» ֆաբրիկայի անվանի ձևող Վասիլի Մատրոսովի աշխատանքի մասին, մանրամասնորեն պատմեց, թե ինչպես է Մատրոսովը հասել բարձր ցուցանիշների։ Գործարանում այդ հարցը լուրջ քննարկության առարկա դարձավ, բոլորն սկսեցին աշխատել Մատրոսո-



վի մեթոդով, որպեսզի նմանվեն, հասնեն նրան, ավելի շատ արտադրանք տան։ Այժմ այդ գործարանում Թումանյանի ձևող բրիգադայի բոլոր բանվորներն իրենց պլանները կատարում են ավելի քան 200 տոկոսով։ Բրիգադան իր տարեկան պլանը կատարեց մայիսի 1-ին, և այժմ արտադրանք է տալիս եկող տարվա հաշվին։ Սկզբում բրիգադայում առաջավորները եզակի էին, իսկ երբ բոլորը յուրացրին Մատրոսովի աշխատանքի մեթոդներն ու ձևերը և աշխատեցին նրա նման՝ հասան ավելի բարձր ցուցանիշների։

Ագիտատորները պետք է ձգտեն հասնել այն բանին, որ առաջավորներ լինեն ոչ թե անհատներ, այլ որ այդ բանը դառնա մասսայական երևույթ, որն էլ հենց սոցիալիստական մրցության էությունն է։ «Սոցիալիստական մրցությունն ասում է. մեկը աշխատում է վատ, մյուսը՝ լավ, երրորդը՝ ավելի լավ, հասիր լավագույնին և ձեռք բեր ընդհանուր վերելք» (Ստալին)։

Յուրաքանչյուր գործարանում կամ կոլխոզում կան արտադրության առաջավորներ, որոնց աշխատանքի մեթոդները պետք է դարձնել ընդհանուրի սեփականությունը։ Դրա համար ագիտատորները պետք է կազ-

մակերպեն առաջավորների ելույթները բրիգադաներում, ցեխերում, օղակներում, ուր նրանք, այդ առաջավորները պատմեն իրենց հարուստ փորձի մասին, իրենց աշխատանքի մեթոդների ու ձևերի մասին, այն մասին, թե ինչպես են իրենք հասել բարձր ցուցանիշների։

Այդ տեսակետից ուսանելի է Թալինի շրջանի Ջիթհանքով գյուղի ագիտատորների փորձը։ Նրանք կոլխոզի տարբեր օղակներում կազմակերպել են Սոցիալիստական Աշխատանքի Հերոս Մարիամ Մարտիրոսյանի ելույթը։ Հերոսուհին պատմում էր կոլխոզնիկներին իր աշխատանքի հարուստ փորձի մասին, այն ուղիների մասին, որով ինքը հասավ բարձր բերքի։

Հետևելով սոցիալիստական դաշտերի հերոսուհու օրինակին, կոլխոզում սկսվեց լայն շարժում բարձր բերքի համար։ Ներկայումս ծավալված բերքահավաքը ցույց է տալիս, որ բարձր բերքի վարպետների թիվը կոլխոզում շատացել է, իսկ կոլխոզն ավելի բերք է հավաքում, քան անցյալ տարի։

Առաջավորների փորձը տարածելու հզոր միջոց են տպագիր թերթերը, խլիչովկաները, պատի թերթերը։ Չկա թերթերի համար



ավելի պատվավոր խնդիր, քան մեր Հայրենիքի առաջավորների փորձը լայն մասսաների սեփականություն դարձնելը։ Ագիտատորը, որը լույս է ընծայում պատի թերթ կամ խլիչովկա, պատվավոր գործ է կատարում։ Նա պետք է հիշի իր կարևոր խնդիրը՝ երևան բերել և ցույց տալ ցեխի, բրիգադայի, օղակի առաջավորներին, պարզ ու մատչելի լեզվով շարադրել նրանց աշխատանքային առօրյան, խրախուսել նրանց, կոչ անել, որ բոլորը հավասարվեն առաջավորներին, որպեսզի ավելի շատ լինեն առաջավոր ցեխերը, բրիգադաները, օղակները, առաջավոր գործարանները, առաջավոր կոլխոզները։

Տպագիր մամուլում հաճախ են հանդիպում հոդվածներ առաջավորների փորձի մասին։ Ագիտատորն այդ հոդվածների նյութերը պետք է օգտագործի իր զրույցների ժամանակ, կամ թե ուղղակի կազմակերպի հոդվածի բարձրաձայն ընթերցանություն։ Նախքան բարձրաձայն ընթերցանությունը, ագիտատորը պետք է լավ կարդա հոդվածը, իր համար պարզաբանի անհասկանալի բառերը և հետո միայն կատարի բարձրաձայն ընթերցանություն։ Պետք է կարդալ պարզ, հստակ, դեղեցիկ, այնպես, որ ամեն մի բա-

որ հասնի ունկնդիրներին։

Ագիտատորը նաև կազմակերպիչ է։ Ճիշտ են վարվում և խրախուսման արժանի են այն ագիտատորները, որոնք կազմակերպում են առաջավորների աշխատանքային պրոցեսների դիտումը տեղում, յուրացնելու համար առաջավորների աշխատանքի մեթոդներն ու ձևերը, նրանց նման աշխատելու համար։

Գործարաններում և կոլխոզներում առաջավորների փորձը տարածելու համար կարևոր նշանակություն ունեն պլակատները, պլակատ-կոչերը, «Առաջավորների տախտակները», որտեղ պետք է փակցնել ոչ միայն առաջավորների նկարները, այլև համառոտակի նշել նրանց աշխատանքի ձևերն ու մեթոդները, ցույց տալ թե ինչպես են նրանք հասել բարձր ցուցանիշների։

Նախահոկտեմբերյան սոցիալիստական մրցությունը գնալով ավելի լայն ծավալ է ընդունում՝ նոր հնգամյակի երկրորդ տարվա պլանները ժամկետից շուտ կատարելու և գերակատարելու համար։ Ագիտատորների խնդիրն է՝ լայնորեն մասսայականացնել սոցիալիստական արդյունաբերության և գյուղատնտեսության առաջավորներին, նրանց հայրենասիրական վառ օրինակով դաստիարակել մասսաներին։

ՀԱՐ. ՓԱՐԻԿՅԱՆ

## ՍԵՊՏԵՄԲԵՐ ԱՄՍԻ ՕՐԱՑՈՒՅՑ

**1939 թ. սեպտեմբերի 1.**— *Ֆաշիստական Գերմանիան հարձակվեց Լեհաստանի վրա։ Սկսվեց երկրորդ համաշխարհային պատերազմը։*

**1945 թ. սեպտեմբերի 2.**— *Տոկիոյում ստորագրվեց ճապոնական զինված ուժերի անվերապահ կապիտուլյացիայի ակտը։*

**1945 թ. սեպտեմբերի 2.**— *Ընկեր Ստալինի դիմումը ժողովրդին Ճապոնիայի կապիտուլյացիայի առթիվ։*

**Սեպտեմբերի 7-ը.**— *Մոսկվայի հիմնադրման 800-ամյակը։*

**Սեպտեմբերի 14.**— *Սովետական Տանկիստների Օրը։*

**1918 թ. սեպտեմբերի 16.**— *Կարմիր Դրոշի շքանշանի սահմանումը։*

**1939 թ. սեպտեմբերի 17.**— *Կարմիր Բանակը սկսեց Արևմտյան Ուկրաինայի և Արևմտյան Բելոռուսիայի ազատագրումը։*

**1918 թ. սեպտեմբերի 20.**— *Բաքվի 26 կո-*

ԳԻՆԸ 1 Ռ.



միսարների գնդակահարումը ինտերվենտների և էսէռական վարձկանների կողմից։

1944 թ. սեպտեմբերի 22.— Կարմիր Բանարի զորամասերը գերմանական զավթիչներից ազատագրեցին էստոնական ՍՍՌ մայրաքաղաք Տալլինը։

1916 թ. սեպտեմբերի 24.— Մեռավ Սուրեն Սպանդարյանը, ականավոր բոլշևիկ, ընկեր Ստալինի զինակիցը (ծնված՝ 1882 թ.)։

1864 թ. սեպտեմբերի 28.— Կ. Մարքսը և Ֆ. Էնգելսը հիմնադրեցին Բանվորների Միջազգային Ընկերությունը (I Ինտերնացիոնալը)։

---

Պատ. խմբագրի տեղակալ
Կ. ՎԱՐԴԱՆՅԱՆ

ՎՖ 02799 Պատվեր 1115. Տիրաժ 9600
Ստորագրված է տպագրության 29/VIII 1947 թ.
Պոլիգրաֆ. և Հրատ. վարչ. № 2 տպարան, Երևան

Отдел Пропаганды и агитации ЦК КП(б)
Армении
Блокнот Агитатора